Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։

## ԵՐԵՎԱՆՈՒՄ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՄՈՆՈՒՄԵՆՏ-ՔԱՆԴԱԿԻ ԲԱՑՄԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ՄԻՏԻՆԳՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԱՐՏԱՍԱՆԱԾ ՃԱՌԸ

*Երեսուն տարի է անցել Հայաստանում Սովետական իշխանության հաստատման օրից։*

*Հայաստանի աշխատավորներն այս նշանակալից տարեթիվը դիմավորում են իրենց կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր հաջողություններով ու հաղթանակներով։*

*Սովետական իշխանության գոյության ժամանակաշրջանում հայ ժողովրդի ամենաաչքի ընկնող նվաճումը իր պետականության վերականգնումն է և հավասարության հիմունքներով մեծ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ մտնելը, որը ամենահզոր պետությունն է ամբողջ աշխարհում։*

*Սովետական իշխանության հաստատումը և բոլշևիկյան պարտիայի ու Սովետական*

կառավարության իմաստուն քաղաքականությունն ապահովեցին հասարակության սոցիալիստական զարգացումը, սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության հուժկու վերելքը, ազգային կուլտուրայի աննախընթաց ծաղկումը։

Սովետական իշխանության տարիների ընթացքում, սոցիալիստական ժողովրդական տնտեսության զարգացման հետ միասին, անշեղորեն բարձրացել է աշխատավորների կյանքի նյութական մակարդակը։

Սովետական իշխանության օրով ժողովրդի ձեռք բերած աչքի ընկնող հաջողություններից մեկը ընդհանուր ապահովվածությունն է աշխատանքով և կյանքի նյութական-կուլտուրական պայմանների բարելավումը։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության անընդհատ աճն ապահովեց բարեկարգված քաղաքների և կոլխոզային նոր գյուղերի շինարարության լայն թափը։

Նոր ձևով, կուլտուրապես է կառուցվում քաղաքների և գյուղերի աշխատավորների կենցաղը։ Պատմության գիրկն է անցնում հին, հետամնաց կենցաղը՝ իր կավածեփ տներով, ճանապարհազրկությամբ, լույսի բացակայությամբ և մարդու կողմից մար-



դու շահագործման ժամանակաշրջանի մյուս մնացորդներով։

Սովետական իշխանությունն իրոք բարձրացրեց մարդու արժանապատվությունը, նրան դարձնելով իր երկրի տերը։

Պատմականորեն կարճ ժամանակամիջոցում, երեսուն տարվա ընթացքում, Սովետական Հայաստանի աշխատավորները կյանքի այդպիսի արմատական վերափոխման հասան շնորհիվ Սովետական իշխանության և բոլշևիկյան պարտիայի ղեկավարության, շնորհիվ մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի հայրական հոգատարության։ (Ծափահարություններ)։

Հայ ժողովուրդն իր բոլոր հաջողությունների համար պարտական է բոլշևիկների պարտիային և անձամբ ընկեր Ստալինին, որը ճիշտ ուղղություն տվեց ժողովրդի պայքարին՝ հանուն իր ազգային ազատագրության, հանուն Սովետական իշխանության հաստատման և սոցիալիստական շինարարության գործում ձեռք բերած հաջողությունների։

Այս հանդիսավոր օրը, հետադարձ հայացք գցելով անցած ուղու վրա և գնահատելով այն, չի կարելի չվերհիշել այն ծանր վիճակը, որի մեջ հայ ժողովուրդը գտնվում էր ներկա դարի սկզբին։

Իր ազատության և անկախության համար անհավասար պայքարում հյուծված հայ ժողովուրդը զոհաբերվում էր արևմտյան պետությունների իմպերիալիստական ագահ քաղաքականությանը — սկզբում դեպի Հնդկաստան և մյուս գաղութները տանող միջերկրածովյան ուղիների պաշտպանության նրանց գաղութային քաղաքականությանը, իսկ այնուհետև, Մերձավոր Արևելքի նավթային ու այլ հարստությունների արևմտյան իմպերիալիստների կողմից զավթելու քաղաքականությանը։

Նրանք նենգորեն իրենց շահադիտական նպատակների համար էին օգտագործում հայերի անզուսպ ձգտումը՝ ազատագրվելու օտարերկրյա լծից։

Արևմտյան տերությունների կեղծավոր քաղաքականությունը հայերին հասցրել էր թշվառ և իրավազուրկ դրության։ Այդ նողկալի քաղաքականությունը ենիչերական Թյուրքիային հնարավորություն տվեց կազմակերպելու հայ ժողովրդի մասսայական բնաջնջումը, ստիպելով նրա զավակներին ցիրուցան լինել ամբողջ աշխարհով մեկ։

Հայերի պատմության այդ ծանր ժամանակաշրջանում, պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման և մեծ առաջնորդներ Լենինի ու



Ստալինի կողմից նոր տիպի, բանվոր դասակարգի պարտիայի ստեղծման արշալույսին ընկեր Ստալինը, գլխավորելով Անդրկովկասի բոլշևիկներին, իր ձեռքը վերցրեց ազատության և անկախության համար հայ ժողովրդի պայքարի ղեկավարումը։

Այդ պայքարը բոլշևիկյան պարտիայի կողմից գլխավորվելու և ընկեր Ստալինի կողմից անմիջականորեն ղեկավարվելու պահից՝ հայ ժողովրդի ազատագրական շարժման պատմության մեջ սկսվում է մի նոր էտապ, որը հասցրեց հաղթության։

Անգլո-ֆրանսիական և ամերիկյան իմպերիալիստները իրենց գործակալության՝ դաշնակների կոնտրռևոլյուցիոն պարտիայի միջոցով բազմիցս փորձել են հայերի ազգային-ազատագրական շարժումը շեղել այդ ճիշտ ուղուց և Հայաստանի տերիտորիան դարձնել պլացդարմ՝ Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու համար։

Այդ փորձերը միշտ էլ վճռական հակահարված են հանդիպել Հայաստանի աշխատավորների կողմից և մեծ զոհեր են պատճառել հայ ժողովրդին։

Ժողովուրդը հատկապես ծանր, անտանելի դրություն ապրեց դաշնակների՝ հայ ժո-

ղովրդի այդ լիախինման-դավաճանների տիրապետության օրով, որոնք երկիրը հասցրին լիակատար քայքայման, իսկ ժողովրդին՝ սովի, աղքատացման և աղետալի դրության։

Հայ ժողովրդի համար ծանր այդ պահին ընկեր Ստալինը բոլշևիկյան պարտիային, Սովետական կառավարությանը և Կարմիր Բանակին կոչ արեց անհապաղ օգնության հասնել՝ հայ ժողովրդին ֆիզիկական բնաջնջումից փրկելու համար։

Հայաստանի բանվորները և աշխատավոր գյուղացիությունը, երիտասարդ Կարմիր Բանակի օգնությամբ, Հայաստանից վռնդեցին անգլո-ամերիկյան կամակատարներին՝ դաշնակներին և հաստատեցին Սովետական իշխանություն։

Հայաստանի աշխատավորները ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից իրենց փրկության և Սովետական իշխանություն հաստատելու համար պարտական են իրենց ազատարարին, մեծ առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։ **(Երկարատև ծափահարություններ):**

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով, ռուս ազնիվ ժողովրդի օգնության շնորհիվ հայ



ժողովուրդը ձեռք բերեց իր իսկական ազատագրությունը, իր պետականության վերականգնումը և ազգային վերածնունդը։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման օրից անցած 30 տարվա ընթացքում անշեղորեն բարձրացել է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը։

Լենինի և Ստալինի ցուցումների, ընկեր Ստալինի անդուլ հոգատարության շնորհիվ Հայաստանում բուռն թափով զարգացավ էներգետիկ տնտեսությունը՝ հիդրոէլեկտրակայանների կառուցումը, որը Հայաստանին դուրս բերեց Սովետական Միության առաջավոր ռեսպուբլիկաների շարքը։

Էժան էլեկտրաէներգիայի բազայի վրա արագ տեմպերով զարգացավ Հայաստանի ինդուստրիալիզացիան։ Հայաստանում կառուցված են արդյունաբերության ժամանակակից ճյուղերի խոշոր ձեռնարկություններ, որոնք տարեցտարի ավելացնում են արտադրանքի թողարկումը։

Արդյունաբերության աճման հետ միասին ավելացել է ինդուստրիալ բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ազգային կադրերի քանակը։

Անցած երեսուն տարվա ընթացքում մեծ աշխատանք է կատարվել հողերի ոռոգման

ասպարեզում, որոնց տարածությունը կազմում է բոլոր վարելահողերի ընդհանուր տարածության համարյա կեսը, մի բան, որ հնարավորություն տվեց կոլխոզային գյուղատնտեսության մեջ արմատավորելու և լայն չափերով զարգացնելու տեխնիկական ու այլ արժեքավոր կուլտուրաները։

Մեկ կողմից ոռոգումը և մյուս կողմից՝ գյուղատնտեսական աշխատանքների լայն մեքենայացումը ապահովեցին կոլխոզային դաշտերի բարձր բերքատվությունը։

Գյուղում կոլխոզների կազմակերպումը՝ անցյալում հետամնաց Հայաստանի գյուղատնտեսությունը դուրս բերեց զարգացման ու ծաղկման լայն ուղի։

Էլեկտրիֆիկացման, ինդուստրացման, ոռոգման, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման և կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման վերաբերյալ ընկեր Ստալինի ցուցումներն իրականացնելու գործում ձեռք բերված խոշոր հաջողությունները պայմաններ ստեղծեցին քաղաքի և գյուղի աշխատավորների նյութական բարեկեցությունը սիստեմատիկ կերպով բարձրացնելու ասպարեզում պարտիայի քաղաքականության իրականացման համար։



Բոլշևիկյան պարտիայի ստալինյան ազգային քաղաքականությունը Հայաստանի օրինակով հասավ իր տրիումֆին։

Անցած երեսուն տարվա ընթացքում ծաղկել է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Հայերի ձգտումը՝ իրենց երեխաներին կրթություն տալու ասպարեզում, լիովին բավարարվեց միայն Սովետական իշխանության օրով։

Ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը ծածկված են միջնակարգ ուսումնական հաստատությունների ցանցով, որոնք լիովին ապահովում են բնակչության պահանջը։

Մեծ թվով բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումները լիովին բավարարում են Հայաստանում ստեղծված ժողովրդական տնտեսության նոր ճյուղերի և կուլտուրայի պահանջը որակյալ և բարձրորակ կադրերի ասպարեզում։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի և Սովետական իշխանության խոշոր նվաճումներից մեկն է հանդիսանում սովետական ժողովրդական ինտելիգենցիայի մեծ աճը և նրա համախմբումը Լենին-Ստալինի պարտիայի շուրջը։ Այդ հնարավորություն տվեց կրթված կադրերով

ապահովելու ռեսպուբլիկայի սոցիալիստական շինարարության կարևորագույն բնագավառները։

Գիտական աշխատողների բազմաթիվ կադրերը իրենց հետազոտություններով ու նոր հայտնագործումներով արժեքավոր ավանդ են մուծում աշխարհում ամենաառաջավոր սովետական գիտության զարգացման գործում։

Բարձր զարգացում են ստացել գրականությունը և արվեստը։ Հմտորեն օգտագործվում է անցյալի կուլտուրայի հարուստ ժառանգությունը։

Գրականությունը և արվեստը իրենց բարձր-գաղափարական, գեղարվեստական երկերով ավելի ու ավելի մեծ դեր են խաղում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

Հայերի հազարամյա կուլտուրան դեռ չէր տեսել այնպիսի ծաղկում, ինչպիսի ծաղկման նա հասել է Սովետական իշխանության գոյության 30 տարվա ընթացքում, ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ։

Կուլտուրայի զարգացման այդպիսի բարձր մակարդակի համար մենք պարտական ենք ընկեր Ստալինի ամենօրյա հոգատա-



րությանը՝ գիտության, գրականության և արվեստի ծաղկման նկատմամբ։

Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է, որ իր բոլոր հաջողություններն ու նվաճումները կապված են մեծ առաջնորդ և իմաստուն ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի անվան հետ։ (**Երկարատև ծափահարություններ**)։

***

Երախտագետ հայ ժողովուրդն այսօր բացվող մոնումենտ-քանդակը կանգնեցրել է ի նշան իր անսահման նվիրվածության բոլշևիկյան պարտիային և նրա մեծ առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին, ի նշան երախտագիտության հայ ժողովրդի նկատմամբ նրա մշտական անդնահատելի ուշադրության և հայրական հոգատարության, ի նշան շնորհակալության ընկեր Ստալինին՝ նրա զորավարական հանճարի համար Հայրենական պատերազմում ֆաշիստական հրոսակախմբերին ջախջախելու և մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանելու գործում։ (**Ծափահարություններ**)։

Ընկեր Ստալինի մոնումենտ-քանդակի բացման այս նշանակալից օրը հայ ժողո-

վուրդը, գիտակցելով իր պարտքը երկրի հանդեպ, հետագա աշխատանքում կգործադրի իր ամբողջ կարողությունը, իր բոլոր ուժերն ու եռանդը՝ մեր սովետական Հայրենիքի ռազմա-տնտեսական ուժն ու հզորությունը է՛լ ավելի ամրապնդելու համար։

Այս նշանակալից օրը մենք հանդիսավոր կերպով խոսք են տալիս՝ է՛լ ավելի ուժեղացնել կապը Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ, է՛լ ավելի ամրապնդել ժողովուրդների ստալինյան բարեկամությունը, Սովետական Միության ուժի և հզորության անսպառ աղբյուրը։

Այս նշանակալից օ՛րը մենք խոսք ենք տալիս՝ բազմապատկել մեր ջանքերը կոմունիզմի հոյակապ կառուցումների՝ վիթխարի հիդրոկայանների ու ոռոգիչ ջրանցքների շինարարությունն իրականացնելու համար, Միութենական կառավարության կողմից ընկեր Ստալինի ցուցումով նշված՝ Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա հուժկու զարգացման ծրագիրն իրականացնելու համար, որը նախատեսում է ռեսպուբլիկայի բնական հարստությունների լայն զարգացում։

Մոնումենտ-քանդակի բացման այս նշանակալից օրը մենք հավաստիացնում ենք



ընկեր Ստալինին, որ հայ ժողովուրդը, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին, համախմբված Սովետական կառավարության ստալինյան խաղաղ քաղաքականության շուրջը, չի խնայի իր ուժերը խաղաղության գործը պաշտպանելու համար, իսկ եթե ագրեսորը ձեռք բարձրացնի մեր ազատության և անկախության վրա, ապա հայ ժողովուրդը, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին, կրծքով պաշտպան կկանգնի իր մեծ սոցիալիստական Հայրենիքին։ (Երկարատև ծափահարություններ):

Կեցցե՛ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 30-ամյակը։

Կեցցե՛ մեծ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Կեցցե՛ Լենինի-Ստալինի պարտիան—մեր բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողը։

Կեցցե՛ ամբողջ աշխատավոր մարդկության մեծ առաջնորդ և ուսուցիչ, խաղաղության դրոշակակիր, կոմունիզմի ճարտարապետ, մեր թանկագին ընկեր ՍՏԱԼԻՆԸ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

—○—

# ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մոտենում է դեկտեմբերի 24-ը՝ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների օրը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները այդ օրվան պատրաստվում են դիմավորել, որպես համաժողովրդական տոնի։ Այդ օրը Սովետական Հայաստանի յուրաքանչյուր չափահաս քաղաքացի, հպարտությամբ լի դեպի իր Հայրենիքը, դեպի բոլշևիկների պարտիան ու հայ ժողովրդի մեծ ազատարար ընկեր Ստալինը, կմոտենա քվեատուփին կատարելու իր քաղաքացիական մեծ պարտքը՝ ընտրելու սովետական իշխանության տեղական օրգանները։*

*Անսահման երջանիկ այն մեծ իրավունքներով, որոնք Ստալինյան Կոնստիտուցիան ապահովել է իրենց համար, ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները կքվեարկեն այդ մեծ իրավունքներն ստեղծողի, սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող, սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի օգտին։*



*Սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, հերոսական աշխատանքով կատարեց ու գերակատարեց մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը նոր, հսկայական քայլերով առաջ է ընթանում դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը։ Օր-օրին ծաղկում ու բարգավաճում է սովետական բազմազգ ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։*

*Հայաստանի աշխատավորությունը դեպի տեղական Սովետների ընտրություններն է գնում Լենինի-Ստալինի պարտիայի գլխավորությամբ, մեծ Ստալինի ղեկավարությամբ ձեռք բերած վիթխարի հաջողությունների պայմաններում։ Հսկայական են այդ հաջողությունները ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես և կուլտուրայի, արվեստի ու գիտության բնագավառում։*

Եվ ահա, որքանով է՛լ ավելի ամրապնդվեն ու բազմապատկվեն այդ հաջողությունները, որքանով է՛լ ավելի ծաղկի ու բարգավաճի մեր Հայրենիքը, Հայաստանի աշխատավորությունը դեկտեմբերի 24-ին միահամուռ կերպով կքվեարկի սովետական իշխանության օգտին, բոլշևիկների պարտիայի օգտին, մեծ Ստալինի օգտին։

Ամբողջ սովետական ժողովուրդը, որպես իր առաջին թեկնածու առաջադրել է մեծ Ստալինին։ Սովետական Հայաստանի աշխատավորությունն անսահման երջանիկ է, որ ժողովուրդների մեծ առաջնորդ, հարազատ Ստալինը իր համաձայնությունն է տվել՝ որպես Երևանի քաղաքային Սովետի դեպուտատության թեկնածու քվեարկվելու։

Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքի աշխատավորությունը սրտի անհուն բերկրանքով է սպասում դեկտեմբերի 24-ի օրվան՝ իր ձայնը տալու մեծ առաջնորդի օգտին։

Հայաստանի աշխատավորությունը մեծագույն խանդավառությամբ իր ձայնը կտա նաև Երևանի քաղաքային Սովետի դեպուտատության թեկնածուներ, ընկեր Ստալինի մերձավոր զինակիցներ ընկ. ընկ. Վ. Մ



Մոլոտովի, Գ. Մ. Մալենկովի, Ա. Ի. Միկոյանի և Լ. Պ. Բերիայի օգտին։

Ինչպես նախորդ ընտրություններում, այնպես և այս ընտրություններին կոմունիստական պարտիան հանդես է գալիս անպարտիականների հետ միասին բլոկ կազմած։ Կոմունիստների և անպարտիականների բլոկն իրավամբ մեր ժողովուրդն անվանում է ստալինյան բլոկ, որովհետև նրա կազմակերպիչն ու ոգեշնչողը հանդիսանում է սովետական ժողովրդի առաջնորդ ընկեր Ստալինը։ Այդ բլոկի թեկնածուները սովետական ժողովրդի լավագույն զավակներն ու դուստրերն են։ Նրանք կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի առաջամարտիկներն են, որոնք աշխատավորների համակրանքին արժանացել են սոցիալիստական շինարարության մեջ կատարած իրենց անձնվեր աշխատանքով, Հայրենիքի նկատմամբ ունեցած անսահման նվիրվածությամբ։

Մինչև ընտրությունները մնացած ժամանակաշրջանում ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ իրենց հանձնարարված տեղամասի բոլոր ընտրողներին մանրամասն ծանոթացնել աշխատավորների առաջադրած դեպուտատության թեկնածուի աշխատան-

քային ու հասարակական գործունեության հետ, նրա գործնական հատկությունների հետ։

Զինված մեր կյանքի բոլոր բնագավառներից վերցրած հարուստ օրինակներով, ագիտատորներն ընտրողներին նորից ու նորից պետք է բացատրեն, թե ինչու յուրաքանչյուր սովետական հայրենասեր պետք է քվեարկի կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք սոցիալիստական արդյունաբերության նոր վերելքի օգտին, այն բանի օգտին, որպեսզի մեր սոցիալիստական տնտեսությունը անարգել կերպով առաջ ընթանա է՛լ ավելի մեծ տեմպերով։

Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք կոլխոզային կարգի հետագա բարգավաճման, ագրարնակչության համար երկրում գյուղատնտեսական մթերքների, արդյունաբերության համար՝ հումքի առատություն ստեղծելու օգտին, սոցիալիստական գյուղատնտեսության նոր հաջողությունների օգտին։



Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք մեր ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարձրացման օգտին, սովետական մարդկանց է՛լ ավելի երջանիկ, ունևոր ու կուլտուրական կյանքի օգտին։

Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք մեր երկրում ժողովրդական կրթության հետագա վերելքի օգտին, սովետական գիտության և կուլտուրայի է՛լ ավելի ծաղկման օգտին։

Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք այն բանի օգտին, որպեսզի Սովետական Միության ժողովուրդները հետագայում էլ լինեն ազատ, իրավահավասար, որպեսզի հետագայում էլ աճի և ամրապնդվի ՍՍՌՄ ժողովուրդների անխախտելի բարեկամությունը։

Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք այն բանի օգտին, որպեսզի աճի և ամրապնդվի սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, մեր սոցիալիստական դեմոկրա-

տիան, որպեսզի սովետական ժողովուրդը հետագայում ևս լինի միաձույլ և միասնական։

Քվեարկելով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, մենք կքվեարկենք ՍՍՌՄ ստալինյան խմաստուն արտաքին քաղաքականության օգտին, ժողովուրդների միջև կայուն խաղաղության օգտին, այն բանի օգտին, որպեսզի ընդարձակվի և ամրապնդվի խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի միջազգային ճակատը։

Թո՛ղ 1950 թվականի դեկտեմբերի 24-ը դառնա համաժողովրդական տոնի օր, Լենինի-Ստալինի պարտիայի, Սովետական կառավարության, Մեծ Ստալինի շուրջը մեր ռեսպուբլիկայի աշխատավորների համախմբվածության վառ ցուցադրման օր։

Հանո՛ւն կոմունիստների և անպարտիականների բլոկի հաղթանակի՝ առաջիկա ընտրություններում։

**ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։**

—O—

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

## ՊՐԻՎՈԼՆՈՅԵ ԳՅՈՒՂԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

Ռեսպուբլիկայում աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների վերաբերյալ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը հրապարակվելուց անմիջապես հետո Կալինինոյի շրջանի Պրիվոլնոյե գյուղի պարտիական կազմակերպությունը վերանայեց ագիտկոլեկտիվի կազմը, այն լրացրեց քաղաքականապես պատրաստված նոր ընկերներով։ Ագիտկոլեկտիվը, որը բաղկացած է 29 ագիտատորներից, այնպես կազմակերպեց իր աշխատանքը, որ ագիտատոր ունենա յուրաքանչյուր բրիգադա, ֆերմա, արհեստանոց։ Ագիտատորներ նշանակվեցին նաև թաղամասերում, բնակչության մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք տանելու համար։

Այդ վերակառուցումից հետո տեղի ունեցած ագիտկոլեկտիվի առաջին սեմինար պա-

րապմունքում նրա ղեկավար ընկ. Ն. Եֆիմովը ագիտատորներին հրահանգչական-մեթոդական ցուցումներ տվեց, թե ինչպես պետք է ընտրողների մեջ մասսայականացնել Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան, տեղական Սովետների ընտրությունների Կանոնադրությունը, ինչպես այդ զրույցները կապել կոլտնտեսության արտադրության, եկող տարվա գարնանացանի նախապատրաստության աշխատանքների հետ։

Բայց ագիտատորներին ցույց տրվող օգնությունը դրանով չսահմանափակվեց։ Ընտրական կամպանիայի անցած ամբողջ ժամանակաշրջանում շաբաթական մեկ անգամ տեղի է ունենում ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունք, ուր ագիտատորները զեկուցումներ են լսում ինչպես ընտրությունների հետ կապված, այնպես և Սովետական Միության ներքին դրության ու միջազգային հարցերի վերաբերյալ։ Այդ սեմինարներում ագիտատորների համար զեկուցումներ են կարդացվել «Ստալինյան Կոնստիտուցիան աշխարհի ամենադեմոկրատական կոնստիտուցիան է», «Սովետական ընտրական սիստեմը և նրա առավելությունները կապիտալիստական ընտրական սիս-



տեմներից», «Ինչ տվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հայ ժողովրդին» և այլ թեմաների շուրջը։

Ագիտատորներին, ինչպես նաև գյուղի բոլոր աշխատավորներին մեծ օգնություն է ցույց տալիս ընտրական կամպանիան սկսվելու հենց առաջին օրերին կազմակերպված ագիտպունկտը, որը դարձել է գյուղում տարվող ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը։ Ագիտպունկտում միշտ կարելի է գտնել թարմ թերթեր՝ հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն լեզուներով, ընտրությունների վերաբերյալ անհրաժեշտ գրականություն։ Ագիտպունկտում մշտապես լինում է հերթապահ կոնսուլտանտ, որը պատասխանում է ագիտատորների, ինչպես նաև ընտրողների հարցերին, օգնում նրանց անհրաժեշտ գրականություն ընտրելու և նրանից օգտվելու գործում։

Ագիտպունկտն ունի իր աշխատանքային պլանը։ Ըստ այդ պլանի ագիտպունկտում արդեն մի շարք զրույցներ են կազմակերպված կանանց, երիտասարդ ընտրողների, տնային տնտեսուհիների հետ, կազմակերպվել են նաև հարց ու պատասխանի երեկոներ, դասախոսություններ և այլն։

Որպես ագիտկոլեկտիվի դրական նախաձեռնություն պետք է նշել նաև կոլտնտեսության անասնապահական ֆերմաներում լավ կահավորված կարմիր անկյունների կազմակերպումը։ Այդ կարմիր անկյուններում ֆերմաների անասնապահների հետ ագիտատորները անց են կացնում իրենց զրույցները կոլտնտեսականների համար, այնտեղ մըշտապես լինում են թերթեր, ժուռնալներ ու գրքեր։

Այժմ մի քանի օրինակ ագիտատորների աշխատանքի փորձից։

Ագիտատոր Օ. Պետրոսյանի հերթական զրույցը, որի թեման էր «ՍՍՌՄ քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները», կոլտնտեսականները լսեցին մեծ հետաքրքրությամբ. դրա պատճառն այն էր, որ ագիտատորն այդ զրույցին նախապատրաստվել էր շատ խնամքով։ Նա թերթերից և ժուռնալներից բազմաթիվ կոնկրետ նյութեր էր հավաքել՝ փաստեր և օրինակներ, որոնք վառ կերպով ցույց էին տալիս, թե ինչպես Սովետական Միության յուրաքանչյուր քաղաքացի ունի բոլոր հնարավորությունները լի ու լի կերպով օգտվելու Ստալինյան Կոնստիտուցիայով իրեն տրված



աշխատանքի, կրթության, հանգստի իրավունքից, խոսքի, մամուլի ազատության, ծերության և աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովության և այլ իրավունքներից։

Ագիտատորը հետաքրքիր օրինակներ բերեց նաև հենց իրենց գյուղից։ Կոլտնտեսային կարգի շնորհիվ իրենց գյուղի բոլոր աշխատավորներն ապրում են ապահով, գնալով ավելի ու ավելի բարգավաճող, կուլտուրական կյանքով, գյուղի բոլոր երեխաները սովորում են դպրոցում, բազմաթիվ երիտասարդներ ուսանում են բարձրագույն ուսումնական հաստատություններում ու տեխնիկումներում։ Ագիտատորն ասաց նաև, որ իրենց կոլտնտեսությունը մի շարք կոլտընտեսականների ուղարկել է հանգստյան տներ, սանատորիաներ։

Ապա ագիտատոր Պետրոսյանը բազմաթիվ ցայտուն օրինակներով ցույց տվեց, թե ինչպիսի իրավազուրկ ծանր պայմաններում են ապրում աշխատավորները կապիտալիստական երկրներում, թե ինչպես այդ երկրների կոնստիտուցիաներում հռչակված «դեմոկրատիան» դեմոկրատիա է միայն շահագործող դասակարգերի համար։

ՍՍՌՄ քաղաքացիների պարտականությունների մասին խոսելիս ագիտատոր Պետրոսյանը նորից իր զրույցը կապեց. իրենց կոլտնտեսականների առօրյա աշխատանքի հետ։ Մենք պետք է պահպանենք և բազմապատկենք մեր հանրային, կոլտնտեսային սեփականությունը,— ասաց նա,— դրա համար անհրաժեշտ է հաջողությամբ կազմակերպել անասունների ձմեռումը, լավագույն կերպով նախապատրաստվել գարնանացանին։

Պրիվոլնոյե գյուղի ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ լայնորեն օգտագործում են ցուցադրական ագիտացիայի բազմազան ձևերը՝ քարտեզներ, դիագրամներ, պլակատներ, իլյիշովկաներ և այլն։ Այսպես օրինակ, ընկ. Ն. Բունակը կոմունիզմի վիթխարի կառուցումներին՝ Վոլգայի վրա կառուցվող հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական ջրանցքի շինարարություններին նվիրված իր զրույցների ժամանակ շրավարարվեց միայն թվական տվյալներ բերելով. նա քարտեզի վրա ցույց տվեց այդ կառուցումների վայրը, ջրանցքների ոռոգելի տարածությունները, ժուռնալներում տպագրված նկարներով ցույց տվեց արդեն



կատարվող աշխատանքները, շինարարության մեջ գործադրվող հսկա մեքենաները։

Շնորհիվ ցուցադրական ագիտացիայի բազմազան ձևերի օգտագործման, ագիտատոր Բունակը կարողանում է իր զրույցներն անցկացնել հետաքրքիր և բովանդակալից։

Այժմ, երբ արդեն առաջադրվել են աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների թեկնածուները, Պրիվոլնոյե գյուղի ագիտատորները կոլտնտեսականներին լայնորեն ծանոթացնում են առաջադրված թեկնածուների հետ, պատմում նրանց լավագույն աշխատանքի մասին։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

—O—

# ԵՐԵՎԱՆԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՌԱՅՈՆԸ ՎԵՐՋԻՆ ԵՐԵՔ ՏԱՐՈՒՄ

Սովետական ժողովրդի և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի անունը կրող Երևանի արդյունաբերական ռայոնի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների 1947 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանում զգալի հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, ժողովրդական կրթության, առողջապահության, ռայոնի բարեկարգման և աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման բնագավառներում։ Ընդարձակվել են ռայոնի սահմանները, աճել է ազգաբնակչության թիվը, զգալի չափով մեծացել է ռայոնի տեսակարար կշիռը Երևան քաղաքի տնտեսության մեջ։

Տեղական Սովետների վերջին ընտրություններից հետո անցած երեք տարիների ընթացքում Ստալինյան ռայոնի արդյունաբերությունը բուռն վերելք ապրեց։ Շահագործման հանձնվեցին արդյունաբերական



նոր ձեռնարկություններ, ընդլայնվեցին և նոր տեխնիկայով հագեցվեցին գոյություն ունեցող գործարանները, ֆաբրիկաները և արտելները, յուրացվեց արտադրանքի նոր տեսակների թողարկումը, ստախանովյան աշխատանքի մեթոդների մասսայաբար կիրառման շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Անցած երեք տարիների ընթացքում Ստալինյան ռայոնի արդյունաբերության համախառն արտադրանքը աճեց 410 տոկոսով։

Հանդես եկան արտադրության բազմաթիվ նորարարներ, առաջավորներ, որոնք ստախանովյան աշխատանքի հարուստ փորձ են կուտակել։ Իրենց լավագույն աշխատանքով մեր ռեսպուբլիկայում հայտնի են դարձել Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանի խառատ, արագագործ Տիրան Թումիկյանի, Ավտոդետալ գործարանի հղկող Ժորա Շահինյանի, Էլեկտրամեքենաշինական գործարանի արագագործ Ռոբերտ Խաչատրյանի և փաթաթող Փառանձեմ Մկրտումյանի, կարբիդագործ Աղասի Մակարյանի, ավտոդողեր հավաքող Պյոտր Գալաշչապովի, կաբելագործ Արագած Կարապետյանի և շատ ուրիշների անունները։

Ռայոնի աշխատավորները, ակտիվորեն

մասնակցելով երկրի կառավարման գործին, միաժամանակ հայրենասիրական անօրինակ խանդավառությամբ պայքարում են առաջավոր տեխնիկայի տիրապետման, արտադրանքի նոր տեսակների յուրացման ու որակի բարձրացման համար։ Ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունները այժմ թողարկում են 200-ից ավելի արտադրանքի տեսակներ։ Ռայոնում արտադրվող մետաղամշակման դազգահները, կոմպրեսորները, պոմպերն ու հիդրոտուրբինները, տրանսֆորմատորներն ու գեներատորները, էլեկտրալարերի տեսակներն ու ավտոմոբիլային մասերը, կաշվի, կոշիկի, գալանտերեայի, ծխախոտի, օճառի տեսակները, բրդյա գործվածքները և բազմաթիվ այլ ապրանքներ լայն չափով կիրառություն են գտել ինչպես մեր ռեսպուբլիկայում, այնպես էլ Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներում։

1947 թ. մինչև 1950 թ. ընկած ժամանակաշրջանում Ստալինյան ռայոնում շահագործման է հանձնվել 19 արտադրական ձեռնարկություն, այդ թվում Փոքր հիդրոտուրբինների, Հախճապակու, Մետաղէկոնստրուկցիաների, Ավտովերանորոգման գործարանները, «Արաքս», «Մանվածք», «Կո-



մոնա», «Պիոներ» արտելները և այլ ձեռնարկություններ։ Այս տարի շահագործման է հանձնվելու Նուրբ մահուդի խոշոր կոմբինատը։

Ռայոնի բոլոր արդյունաբերական ձեռնարկություններում կատարելագործվել և մեքենայացվել են տեխնոլոգիական և աշխատանքային պրոցեսները, սարքավորվել և շահագործման են հանձնվել նորագույն մեքենաներ, դազգահներ, ապարատներ ու ագրեգատներ, ընդլայնվել և լավացել է թողարկվող արտադրանքի ասորտիմենտը։ Միայն 1950 թ. ընթացքում ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել են 30-ից ավելի նոր տեսակի արտադրանքների թողարկումը։

Էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը այս տարի յուրացրել է 100-ից բարձր կիլովատ հզորություն ունեցող գեներատորների ու տրանսֆորմատորների, ինչպես նաև գյուղատնտեսության համար շարժական էլեկտրատրանսֆորմատորային ենթակայանների արտադրությունը, Կաբելի գործարանը սկսել է թողարկել նոր տեսակի էլեկտրալարեր։

Մոտոռավերանորոգման գործարանը սկսել է արտադրել նոր տեսակի էլեկտրամոտորներ և զոդման տրանսֆորմատորներ։

Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանը յուրացրել է նոր, բարձր ցուցանիշներ ունեցող և ճշգրիտ աշխատող խառատա-պտուտակային դազգահի արտադրությունը։

Ռայոնի ձեռնարկություններում այս տարի յուրացվել է նաև բարձր որակի բրդյա գործվածքների, կոշիկի, գալանտերեայի, ծխախոտի, ներկերի, դերմոնտինի տեսակների և այլ ապրանքների արտադրությունը։

Ստալինյան ռայոնի բանվորներն ու բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները, անընդհատ բարձրացնելով իրենց տեխնիկական ու կուլտուրական մակարդակը, տիրապետելով առաջավոր տեխնիկային, սովորել են կարճ ժամանակամիջոցում ոչ միայն յուրացնել նոր մեքենաների շահագործումը և արտադրանքի նոր տեսակների թողարկումը, այլև կատարելագործել և գերազանցել նրանց նախագծային և տեխնիկական ցուցանիշները։

Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը, շատ կարճ ժամանակում ավտոդող հավաքող բոլոր մեքենաները փոխարինելով նոր, ավելի կատարելագործված մեքենաներով, կարողացավ նրանցով հավաքել բարձր որա-



կի ավտոդողեր և սահմանված նորմաները գերակատարել 2—3 անգամ։ 1950 թվականի միայն 10 ամիսների ընթացքում գործարանը 192 տոկոսով ավելի արտադրանք տվեց, քան ամբողջ 1947 թ. ընթացքում։ Գործարանն այդ ցուցանիշներին հասել է առանց լրացուցիչ արտադրական նոր տարածության շահագործման հանձնելու։ Յուրաքանչյուր ավտոդողի թողարկման վրա այժմ մոտ 3 անգամ ավելի քիչ ժամանակ է ծախսվում, քան 1947 թվականին։ Այս ամենի շնորհիվ զգալի չափով իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Էլեկտրամեքենաշինական գործարանը անցած երեք տարիների ընթացքում խոշոր չափերով աճեց, դառնալով ռեսպուբլիկայի արդյունաբերական հզոր ձեռնարկություններից մեկը։ Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ գործարանի կոլեկտիվը, սկսած 1949 թվից, հաղթող է դուրս գալիս։ 1950 թ. երեք եռամսյակների ընթացքում գործարանը այդ մրցության մեջ անընդհատ գրավել է առաջին տեղը։ 1950 թվականին, 1947 թ. հետ համեմատած, գործարանը տալիս է 7 և կես անգամ ավելի արտադրանք։ Այժմ յուրաքանչյուր գեներատորի արտադրության

վրա 2,5 անգամ ավելի քիչ ժամանակ է ծախսվում, քան 1947 թվականին։

Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանում արտադրական պրոցեսների կատարելագործման, առաջավոր տեխնիկայի ներդրման և ստախանովյան աշխատանքի մեթոդների մասսայական կիրառման հետևանքով զգալի չափով բարձրացել է արտադրողականությունը և լավացել արտադրանքի որակը։ 70-ից ավելի դազգահագործներ աշխատում են մետաղների արագահատ մեթոդով։ Այս բոլոր միջոցառումները հնարավորություն են տվել բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և ավելի քան երեք անգամ կրճատել դազգահների թողարկման համար պահանջվող բանվորական ժամանակը։

Այս բերկրալի օրերին ռայոնի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքային մեծ խանդավառություն է տիրում։ Գործարանների կոլեկտիվները, ի պատիվ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների առաջիկա ընտրությունների, կանգնել են ստախանովյան հերթափոխությունների, ծավալելով սոցիալիստական մրցությունը, պայքարում են արդյունաբերության նոր վերելքի համար, ավելի



բարձր ցուցանիշների հասնելու, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի եզրափակիչ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 24-ին կատարելու համար։ Մինչև դեկտեմբերի 1-ը ռայոնի արտադրական ձեռնարկություններից 34-ը ժամկետից շուտ կատարել են 1950 թ. պլանը։

Անցած երեք տարիների ընթացքում Ստալինյան ռայոնը լուրջ հաջողություններ ձեռք բերեց նաև կուլտուրայի և ժողովրդական կրթության բնագավառում։ Այսօր ռայոնն ունի իր սեփական թատրոնը, որտեղ իրենց ներկայացումներն են տալիս Երևանի Սունդուկյանի անվան, Ստանիսլավսկու անվան, Երաժշտական կոմեդիայի պետական թատրոնները, Հայֆիլհարմոնիայի և այլ էստրադային խմբերն ու անսամբլները, հանդես են գալիս ռեսպուբլիկայի թատերական ու երաժշտական լավագույն ուժերը։

Ռայոնում գործում են «Սասունցի Դավիթ» և Կիրովի գործարանի 1-ին մասի կինոթատրոնները։ Կառուցվել և շահագործման է հանձնվել Նոր Արեշ ավանի ակումբի կինոթատրոնը, ավարտվում է «Նաիրի» կինոթատրոնի շենքի շինարարությունը, գործում են Կիրովի, էլեկտրամեքենաշինական, Գա-

չի, Կաշվի գործարանների, Ջեթ-օճառ կոմբինատի, Մխախոտի, Կարամել-մակարոնի ֆաբրիկաների, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի հանգույցի ակումբ-կինոթատրոնները։ Կոմսոմոլի պարկը և Ստալինյան ռայոնի կուլտուրայի ու հանգստի պարկը դարձել են աշխատավորության և, մասնավորապես, երիտասարդության հանգստի լավագույն վայրերը։

Ներկայումս ռայոնում գործում են մասսայական տիպի 24 դպրոց՝ 1947 թ. եղած 17 դպրոցի դիմաց։ Այդ նույն ժամանակամիջոցում դպրոցներում սովորող աշակերտների թիվը ավելացավ 5.600-ով։ Զգալի չափով ընդարձակվել են դպրոցների ուսումնա-դաստիարակչական բազան և մյուս հարմարությունները, կազմակերպվել են մի քանի տասնյակ կաբինետներ, հարստացվել են եղածները, 5 դպրոցներ հարմարեցված ժամանակավոր շենքերից փոխադրվել են դպրոցական նոր շենքեր. այս տարի կառուցվել և շահագործման է հանձնվել ևս 2 դպրոցական շենք։

Ռայոնում ներկայումս գործում են 2 սպորտ դպրոցներ 500 սպորտսմեններով։ Բացի մասսայական դպրոցներից ռայոնում կա 4 տեխնիկում, 3 արհեստագործական ուսումնարան և 4 հատուկ դպրոցներ։



Ժողովրդական կրթության հատկացվող միջոցները 1950 թվականին, 1947 թ. նկատմամբ, աճել են 52 տոկոսով։

Անցած երեք տարիների ընթացքում զգալի չափով բարելավվել է նաև ռայոնի առողջապահության ցանցը։ Պետության կողմից այս տարի ռայոնի առողջապահության կարիքների համար 81 տոկոսով ավելի միջոցներ են հատկացված, քան 1947 թվականին։ Միայն վերջին երեք տարիների ընթացքում կառուցվեցին 2 պոլիկլինիկա, ընդարձակվեցին եղած հիվանդանոցները, պոլիկլինիկաները։ Այդ ժամանակաշրջանում հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացավ 62 տոկոսով, ծննդաբերական մահճակալների թիվը՝ 50 տոկոսով, կրկնապատկվեց մանկական կոնսուլտացիաների, լաբորատորիաների, բժշկական զանազան կաբինետների թիվը։ Կառուցվել են 3 նոր մանկապարտեզներ։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների վերջին ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանում Ստալինյան ռայոնի ծայրամասերում, անմարդաբնակ վայրերում կառուցվել են նոր, բարեկարգված ավաններ, լայնացվել է խճուղային-ճանապարհային ցանցը, բարե-

կարգվել են գոյություն ունեցող թաղամասերն ու բանվորական ավանները։

Միայն վերջին տարիների ընթացքում կառուցվեց Նոր Արեշ ավանն իր գեղեցիկ, բարեկարգ տներով, ուղիղ ու լայն փողոցներով, կինո-թատրոնի, ակումբի, պոլիկլինիկայի, դպրոցի և այլ կուլտուրական հիմնարկություններով։ Բարձրացել են Գաջի գործարանի, Տեղական արդյունաբերության մինիստրության 1-ին և 2-րդ բանվորական ավանները։ Զգալիորեն բարեկարգվել և ընդարձակվել է Կիրովի անվան գործարանի բանվորական ավանը։ Կարճ ժամանակամիջոցում նշված ավաններում անց է կացված ջրմուղ-կոյուղի, էլեկտրական լուսավորություն։

Միայն վերջին երեք տարիների ընթացքում կառուցվել և բարեկարգվել են 310 հազար քառ. մետր փողոցներ, որից ասֆալտապատած է 195 հազար քառ. մետր։ Ռայոնի աշխատավորության լայն աջակցությամբ և անմիջական մասնակցությամբ կառուցվել են Լ. Պ. Բերիայի անվան փողոցը, Թամանցիների փողոցը, Օրջոնիկիձեի պողոտայի շարունակությունը, Մայակովսկու փողոցն՝ իր բարեկարգ կամուրջով և այլ փողոցներ։

Զգալիորեն ավելացել է ռայոնի բնակելի



ֆոնդը, կառուցվել ու շահագործման են հանձնվել նոր բնակելի տներ։ Լայն չափերի է հասել անհատական բնակարանային շինարարությունը։ Միայն 1948 թվին և 1949 թ. առաջին կիսամյակի ընթացքում անհատական բնակարանային շինարարության համար բաժանվեց 1600 հողամաս և բաց թողնվեց 2 միլիոն ռուբլու պետական վարկ։ Այդ նույն ժամանակամիջոցում ավարտված ու շահագործման է հանձնված 750 անհատական տուն։ Զգալիորեն աճել են նաև կանաչապատված տարածությունները, տնկված են տասնյակ հազարավոր ծառեր ու թփեր, կառուցված են նոր ծաղկանոցներ և այլն։

Մեծ առաջնորդի անունը կրող ռայոնի աշխատավորները, դեկտեմբերի 24-ին, մեկ մարդու պես միահամուռ կերպով իրենց ձայնը կտան ժողովուրդների հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար, հարազատ Ստալինի օգտին, կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման օգտին։

Կ. ՊԱՊՅԱՆ

(ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան ռայկոմի քարտուղար)



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

I

## ԼԵՆԻՆ-ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՆ ՄԵՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ ԵՎ ՈԳԵՇՆՉՈՂՆ Է ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՅՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

*1. Ընկեր Ստալինի 1946 թվի փետրվարի 9-ի պատմական ճառը մեր երկրում կոմունիզմի կառուցման համար սովետական ժողովրդի պայքարի հոյակապ ծրագիրն է։*

*2. Բնության վերափոխման ստալինյան պլանը, խոշորագույն հիդրոէլեկտրակայանների շինարարությունը կոմունիզմի կառուցման ընդհանուր ծրագրի անբաժանելի մասն են։*

*3. Հետպատերազմյան շրջանում սովետական ժողովրդի ձեռք բերած մեծագույն հաջողությունները արդյունք են ընկեր Ստալինի ցուցումները կյանքում կենսագործելու և կոմունիստական պարտիայի հսկայական կազմակերպչական աշխատանքի։*

*4. Սովետական մարդկանց նյութական, կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը՝ աշխատավորության նկատմամբ կոմունիստական պարտիայի հոգատարության արտահայտությունն է։*



*5. Պատրաստվելով աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին, նորանոր հաջողություններ ձեռք բերենք մեր Հայրենիքի հետագա հզորացման, ամրապնդման և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 33-րդ տարեդարձը: Ն. Ա. Բուլգանինի զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1950 թ. նոյեմբերի 6-ին: *«Ս. Հ.»-ի 1950 թ. նոյեմբերի 7-ի համարը։*

Կոմունիզմի մեծ կառուցումները և բնության վերափոխումը: *«Պարտիական կյանք», 1950 թ. № 11, էջ 57—63։*

Լենին-Ստալինի վեհ դրոշով: *«Ս. Հ.»-ի 1950 թ. նոյեմբերի 10-ի առաջնորդողը։*

Աճում և ամրապնդվում է մեր Հայրենիքի հզորությունը։ *«Պրավդա»-ի 1950 թ. հոկտեմբերի 24-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 25-ի համարում։*

Ամենադեմոկրատական ընտրական սիստեմը: *«Ս. Հ.»-ի 1950 թ. հոկտեմբերի 6-ի առաջնորդողը։*

Լայնորեն ծավալել ընտրությունների նախապատ-

**ռասսաություն:** *«Ս. Հ.»-ի 1950 թ. հոկտեմբերի 21-ի առաջնորդողը։*

**Կոմունիզմի մեծ կառուցումները:** *«Պրավդա»-ի 1950 թ. սեպտեմբերի 3-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 5-ի համարում։*

*II*

## 1950 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 24-Ը ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է

*1. Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստությունը տեղի է ունենում քաղաքական և աշխատանքային հսկայական վերելքի պայմաններում։*

*2. Մեծ Ստալինը աշխատավորների դեպուտատների Սովետների առաջին համաժողովրդական թեկնածուն է։*

*3. Մեծ Ստալինի զինակիցները և մեր ժողովրդի լավագույն զավակները՝ կոմունիստների և անկուսակցականների ստալինյան անպարտելի բլոկի թեկնածուներն են։*

*4. Քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին՝ մենք կքվեարկենք սոցիալիստական շինարարության նորանոր հաջողությունների օգտին, ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականության օգտին։*



*5. 1950 թ. դեկտեմբերի 24-ին բոլորս, որպես մի մարդ, մեր ձայնը տանք կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դիմումը բոլոր ընտրողներին, բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմիղի մարտիկներին, սովետական ինտելիգենցիային: *«Ս. Հ.»-ի 1950 թ. փետրվարի 17-ի համարը։*

**Մեծ Ստալինը համաժողովրդական առաջին թեկնածուն է:** *«Ս. Հ.» 1950 թ. դեկտեմբերի 1-ի առաջնորդողը։*

**Ժողովրդի թեկնածուները:** *«Ս. Հ.» 1950 թ. նոյեմբերի 25-ի առաջնորդողը։*

*Великое единство советского народа.* „Правда", 11 ноября 1950 г., передовая.

*Лучшие сыны и дочери советского народа.* „Правда", 12 ноября 1950 г., передовая.

### III

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ 2-ՐԴ ԿՈՆԳՐԵՍԸ

1. Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսը բոլոր երկրների ժողովրդական լայն մասսաների միասնության վառ ապացույցն է կայուն խաղաղության համար մղվող պայքարում։

2. Ամերիկա-անգլիական իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության, ՍՍՌՄ ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ նոր պատերազմի հրահրման նրա պլանների մերկացումը՝ խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսում։

3. Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսի Մանիֆեստը, ուղղված աշխարհի բոլոր ժողովուրդներին՝ մոբիլիզացիայի և միաձուլման հզոր միջոց է հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության։

4. Օրեց-օր աճում և հզորանում են խաղաղության, սոցիալիզմի ու դեմոկրատիայի հզոր ճակատի ուժերը։

5. Կոնգրեսի դելեգատների՝ ամերիկա-անգլիական իմպերիալիստների միլիտարիստական պլանների դեմ ուղղված միահամուռ ելույթները՝ խիստ նախազգուշացում են նոր պատերազմի հրձիգներին։

6. ՍՍՌՄ-ի առաջատար դերը հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության, հանուն մեծ ու փոքր ազգերի իրավահավասարության և համագործակցության մղվող պայքարում։



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման շահերի օգտին: «Պրավդա»-ի 1950 թ. հոկտեմբերի 23-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 24-ի համարում։

Խաղաղությունը կհաղթի պատերազմին: «Պրավդա»-ի 1950 թ. հոկտեմբերի 19-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 20-ի համարում։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսի դոկումենտները՝ «Մանիֆեստ ուղղված աշխարհի ժողովուրդներին», «Դիմում Միավորված Ազգերի Կազմակերպությանը», «Բանաձև ռեպրեսիաների զոհերի հարցի վերաբերյալ»: «Ս. Հ.»-ի 1950 թ. նոյեմբերի 24-ի համարը։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսի նյութերը: «Ս. Հ.»-ի 1950 թ. նոյեմբերի 21-ի, 22-ի, 23-ի, 24-ի, 25-ի համարները։

Հանուն խաղաղության: «Ս. Հ.»-ի 1950 թ. հոկտեմբերի 15-ի առաջնորդողը։

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային 2-րդ կոնգրեսը. «Պրավդա»-ի 1950 թ. նոյեմբերի 16-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 17-ի համարում։

IV

# ԿԱԶՄԱԿԵՐՊԵՆՔ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԵՎ ԶՈՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԼԱՅՆ ՈՒՍՈՒՅՈՒՄ

*1. Ագրոտեխնիկական և զոոտեխնիկական գիտելիքների ուսումնասիրությունը և այն կոլխոզների պրակտիկ աշխատանքներում օգտագործելը բերքատվության և անասունների մթերատվության հետագա բարձրացման հիմքն է հանդիսանում։*

*2. Միչուրինյան ուսմունքին և կոլխոզային արտադրության նորարարների փորձին տիրապետելը բոլոր կոլխոզնիկների առաջնահերթ խնդիրն է։*

*3. Կոլխոզային մասսայական կադրերի ուսուցման կազմակերպումը՝ գյուղատնտեսական արտադրությունը որակյալ կադրերով ապահովելու հիմնական պայմանն է։*

*4. Ինչպես է կազմակերպվում մեր կոլխոզում ագրոտեխնիկական և զոոտեխնիկական ուսուցումը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում՝ ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքների մասին: *Հայպետհրատ, 1948 թ., էջ 40—52։*





ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Կոլխոզների հետագա ամրապնդումը և Հայաստանում գյուղատնտեսության ընդարձակման ու զարգացման ուղիները: *«Պարտիական կյանք» 1950 թ. № 7, էջ 11—30։*

Հանուն հողագործության բարձր կուլտուրայի: *«Պրավդա»-ի 1950 թ. օգոստոսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 19-ի համարում։*

Ակումբը և առաջավորների փորձի պրոպագանդան: *«Ս. Հ.»-ի 1950 թ. հոկտեմբերի 14-ի առաջնորդողը։*


—O—



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ագրարային քաղաքականության հարցերի շուրջը ՍՍՌՄ-ում: 33 էջ։

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ.— Երկերի լիակատար ժողովածու: 2-րդ հատոր։ 602 էջ, գինը 14 ռ. 60 կոպ.։

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ.— Երկերի լիակատար ժողովածու: 3-րդ հատոր։ 618 էջ, գինը 15 ռ. 70 կոպ.։

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ.— Երկերի լիակատար ժողովածու: 4-րդ հատոր։ 527 էջ, գինը 13 ռ. 40 կոպ.։

Ի. Վ. ՍԱԶՈՆՈՎ.— Ավիացիան ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ: 37 էջ, գինը 70 կոպ.։

Վ. Ի. ՄԱԿԱՐՈՎ.— Բնության պահպանությունը ՍՍՌՄ-ում: 111 էջ, գինը 1 ռ. 85 կոպ.։

Ն. ՄԱԼԱԹՅԱՆ.— Գյուղատնտեսական կենդանիների կերակրման հիմունքները: 40 էջ, գինը 80 կոպ.։

Ա. Ա. ՅԱԿՈՎԼԵՎ.— Երկրի կյանքը: 323 էջ, գինը 9 ռ. 15 կոպ.։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ


Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 23 1950 г.

ՎՖ 06588 Պատվեր № 869 Տիրաժ 9050

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան